Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 5 1948

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 33—89.

---

# ԱՐԱԳԱՑՆԵՆՔ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՏԱԿՄԱՆ ՏԵՄՊԵՐԸ, ԱՇԽԱՏԵՆՔ ԱՌԱՆՑ ԴՈՏԱՑԻԱՅԻ

Ամբողջ Սովետական Միության մեջ լայն ծավալ է ստացել սոցիալիստական մրցությունը հետպատերազմյան հնգամյակը չորս տարում կատարելու համար: Այդ վիթխարի ծրագիրը հաջողությամբ իրականացնելու գործում հսկայական նշանակություն ունի սոցիալիստական կուտակման տեմպերի արագացումը՝ արդյունաբերական ձեռնարկությունների աշխատանքի շահութաբերությունը ամեն կերպ բարձրացնելու միջոցով:

Ի տարբերություն կապիտալիստական երկրների, որտեղ արտադրության շահույթը հանդիսանում է առանձին կապիտալիստների սեփականություն և օգտագործվում է որպես միջոց աշխատավորներին է՛լ ավելի շահագործելու համար, մեզ մոտ, սոցիալիս-

տական տնտեսության պայմաններում, շահույթը ժողովրդական սեփականություն է, ծառայում է իբրև սոցիալիստական կուտակման աղբյուր և ծախսվում է ժողովրդական տնտեսության հետագա զարգացման, աշխատավորների նյութական կյանքի բարելավման համար։ Սոցիալիստական կուտակման հաշվին սովետական ժողովուրդը, իրականացնելով ստալինյան հնգամյակների հոյակապ պլանները, կառուցում է գործարաններ ու ֆաբրիկաներ, հանքահորեր ու ճանապարհներ, դպրոցներ ու համալսարաններ, թատրոններ ու կինոներ, հիվանդանոցներ ու ամբուլատորիաներ, սանատորիաներ ու հանգստի տներ, որտեղ աշխատում, սովորում, բուժվում և հանգստանում են Սովետական Միության միլիոնավոր աշխատավորները։

Այստեղից պարզ է, թե ինչու յուրաքանչյուր գործարան ու ֆաբրիկա պետք է աշխատի շահույթով, բարձրացնի սոցիալիստական կուտակման տեմպերը, այսինքն՝ օգուտ տա պետությանը։

Սովետական Հայաստանի շատ ձեռնարկություններ 1947 թվականին հասան ար-



տադրանքի ինքնարժեքի զգալի իջեցման և գերակատարեցին շահույթի պլանները։ Շահութաբեր ձեռնարկությունների թվին են պատկանում Ալավերդու Պղնձաձուլական գործարանը, որի կոլեկտիվն անցյալ տարի տվեց 5,5 միլիոն ռուբլի շահույթ, Երևանի Կարբիդի գործարանը, և շատ ուրիշ գործարաններ ու ֆաբրիկաներ։

Սակայն դրանց կողքին կան նաև այնպիսի ձեռնարկություններ, որտեղ անտնտեսավարության հետևանքով ոչ թե շահույթ է ստացվում, այլ, ընդհակառակը, վատնվում են պետական միջոցները, աճում են անարտադրողական ծախսերը։ Դրա հետևանքով պետությունն ստիպված է լինում ամեն տարի այդ ձեռնարկություններին տալ մեծ դոտացիա, կտրելով այդ միջոցները սոցիալիստական շինարարությունից։

Խորը գիտակցելով շահութաբեր աշխատանքի և սոցիալիստական կուտակման տեմպերի բարձրացման խոշոր նշանակությունը սոցիալիստական շինարարության համար, Մոսկվա քաղաքի ինը արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվներ ընկեր Ստալինին ուղարկած նամակում պար-

տավորություն են ստանձնել շահութաբեր դարձնելու իրենց ձեռնարկությունները, հրաժարվելու պետական դոտացիայից։ Այդ նախաձեռնությունն ունի ժողովրդա-տնտեսական մեծ նշանակություն, որովհետև որքան բարձր լինեն կուտակման տեմպերը, որքան խնայողաբար աշխատի յուրաքանչյուր ձեռնարկություն, այնքան շուտ սովետական ժողովուրդը կվերացնի պատերազմի հետևանքները, է՛լ ավելի կամրապնդի մեր սոցիալիստական պետությունը։

Մոսկվացիների արժեքավոր նախաձեռնությունը լայն արձագանք է գտել Սովետական Միության բազմաթիվ ձեռնարկություններում, այդ թվում նաև Սովետական Հայաստանում, որտեղ առաջինը մոսկվացիների նախաձեռնությանն արձագանքեցին Դազգահաշինական, Կաշվի և Շինանյութերի գործարանների կոլեկտիվները։ Հայաստանի արդյունաբերական ձեռնարկությունների բոլոր բանվորներին, բանվորուհիներին, ինժեներա-տեխնիկական աշխատողներին ու ղեկավարներին ուղղած իրենց դիմումի մեջ այդ գործարանների կոլեկտիվները գրում են.



«Հաշվելով մեր հնարավորությունները և վերլուծելով այն ուղիները, որոնցով պետք է ընթանա հումքի, շինանյութերի, գործիքի, վառելանյութի, էլեկտրոէներգիայի խնայողության համար մղվող պայքարը, մենք համոզվեցինք, որ կորուստների դեմ հետևողական պայքար մղելու, խնայողության խիստ ռեժիմ մտցնելու, բարձրորակ արտադրանքի թողարկումն ավելացնելու և անարտադրողական ծախսերը կրճատելու միջոցով մենք զգալի չափով կիջեցնենք արտադրանքի ինքնարժեքը և կկանգնենք շահութաբեր աշխատանքի ճանապարհի վրա»։

Որո՞նք են շահութաբեր աշխատանքի հասնելու հիմնական ուղիներն ու միջոցները։

Գլխավոր միջոցներից մեկը ձեռնարկությունում խնայողության խիստ ռեժիմի կիրառումն է հումքի, վառելանյութի, էլեկտրոէներգիայի և օժանդակ նյութերի ծախսման նկատմամբ։

Մեր Ռեսպուբլիկայի մի շարք ձեռնարկությունների կոլեկտիվներ լայն նախաձեռնություն են ցուցաբերում հումքի տնտեսման միջոցառումներ մշակելու և իրականացնելու գործում, որի հետևանքով հասել են զգալի

հաջողությունների։ Օրինակ, Ավտոդողերի գործարանի կոլեկտիվը 1947 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ, համարյա հինգ անգամ կրճատեց հումքի արտադրական մնացուկները և տնտեսեց ավելի քան 3 միլիոն ռուբլի պլանային դոտացիա։ Սակայն դրա կողքին կան և այնպիսի ձեռնարկություններ, որոնք արժեքավոր հումքի արտապլանային մեծ կորուստներ են տալիս, իսկ հումքի շռայլման պայմաններում խոսք անգամ լինել չի կարող շահութաբեր աշխատանքի մասին։

Շահութաբեր աշխատանքն ապահովելու համար անհրաժեշտ է ամենօրյա պայքար մղել աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրանքի քանակի ավելացման ու թողարկվող ապրանքների ինքնարժեքի իջեցման համար։ Իսկ աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում կարևոր նշանակություն ունի աշխատանքի ճիշտ կազմակերպումը, տեխնոլոգիական պրոցեսների ռացիոնալացումը, նոր տեխնիկայի յուրացումը, արտադրական կարողություննե-



րի լրիվ օգտագործումը, որը հնարավորություն է տալիս աշխատանքի և նյութերի պակաս ծախսումով ստանալու ավելի շատ և ավելի լավորակ արտադրանք։

Անհրաժեշտ է հատուկ ուշադրություն նվիրել աշխատանքային տեղի ռացիոնալ կազմակերպմանը, այն ժամանակին հումքով, կիսաֆաբրիկատներով ու գործիքներով ապահովելուն, պայմաններ ստեղծել բանվորների ինտենսիվ աշխատանքի համար՝ ամբողջ բանվորական օրվա ընթացքում։

Մեծ դեր է խաղում արտադրողականության բարձրացման գործում աշխատանքի ճիշտ վարձատրությունը, արտադրական նոր, տեխնիկապես հիմնավորված միջին պրոգրեսիվ նորմաների կիրառումը։ Որքան շատ բանվորներ ընդգրկված լինեն աշխատանքի վարձատրման պրոգրեսիվ-գործարքային սիստեմի մեջ, այնքան ավելի բարձր կլինի աշխատանքի արտադրողականությունը։

Կուտակումների, շահութաբերության աճումն անմիջականորեն կապված է արտա-

դրանքի որակի բարձրացման հետ։ Մի շարք ձեռնարկություններ ծախսելով արժեքավոր հումքը, տալիս են վատորակ արտադրանք և ահագին վնասներ են կրում խոտանից։ Իսկ այն ձեռնարկությունները, որոնք տալիս են բարձրորակ արտադրանք, ստանում են նաև մեծ շահույթ։ Այսպես օրինակ, Երևանի Կաշվի գործարանը 1947 թվականին կատարելով բարձրորակ արտադրանքի թողարկման պլանը, ստացավ 246 հազար ռուբլի շահույթ։ Արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվների խնդիրն է՝ ամենօրյա հետևողական պայքար ծավալել խոտանի վերացման և բարձրորակ արտադրանք տալու համար։

Աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու և արտադրանքի որակը բարելավելու գործում վճռական դեր է խաղում կադրերի սիստեմատիկ պատրաստումը և նրանց մասսայական վերաորակավորումը, արտադրության առաջավորների փորձի յուրացումը։ Իսկ դրա համար անհրաժեշտ է ֆաբրիկաներում և գործարաններում կազմակերպել տեխմինիմումի դասընթացներ



ստախանովյան դպրոցներ, դրանց ղեկավարման համար օգտագործելով որակյալ բանվորներին, վարպետներին, ինժեներներին ու տեխնիկներին։

Ձեռնարկության շահութաբերության բարձրացման անհրաժեշտ պայմաններից է նաև վարչա-տնտեսական ու կառավարչական ապարատի մշտական ռացիոնալացումը, փքուն հաստիքների կրճատումը, ավելորդ օղակների լիկվիդացումը, վարչա-տնտեսական ապարատի պահպանման ծախսերի սիստեմատիկ կրճատումը։

Արտադրության ծախքերի կրճատման և արտադրանքի ինքնարժեքի իջեցման կարևոր միջոցառում է միջցեխային տնտհաշվարկի կիրառումը, որը բարձրացնում է պահանջկոտությունը, ցեխերի վարիչներին, արտադրական բանվորներին ստիպում է խորը թափանցել արտադրության էկոնոմիկայի մեջ, աշխատել խնայողաբար և թույլ չտալ անտնտեսավարություն։ Տնտհաշվարկը ցեխի կոլեկտիվին ստիպում է խնայողաբար ծախսել հումքը, վառելանյութը, էներգիան

և օժանդակ նյութերը, ուժեղացնում է պայքարը խոտանի դեմ, բարելավում է արտադրանքի որակը և բարձրացնում է աշխատանքի արտադրողականությունը։

Պայքարը ձեռնարկությունների շահութաբեր աշխատանքի համար, կտանի դեպի արտադրանքի ինքնարժեքի իջեցում, հետևապես կիջեցնի ապրանքների գները, որն իր հերթին ավելի կբարձրացնի ռեալ աշխատավարձը, կմեծացնի մեր հանրային հարստությունը, և՛ ավելի կբարելավի աշխատավորների կենսամակարդակը։

Գործարանների և ֆաբրիկաների աշխատավորները սոցիալիստական մրցության մեջ մտնելով հնգամյակը չորս տարում կատարելու համար, իրենց սոցիալիստական պարտավորությունների կատարման հետ միասին, կապահովեն նաև արտադրության որակական ցուցանիշների աճումը և կհասնեն առավել շահութաբեր աշխատանքի բոլոր ձեռնարկություններում։

Լ. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԹԵՄԱՆԵՐԻ ՇՈՒՐՋ

## ՀԱՆՈՒՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՆՈՐ ՀԶՈՐ ՎԵՐԵԼՔԻ

Ընթացիկ 1948 թվականը մեր ամբողջ ժողովրդական տնտեսության, այդ թվում նաև սոցիալիստական գյուղատնտեսության համար վճռական տարի է հետպատերազմյան ստալինյան հնգամյակը չորս տարում իրագործելու համար մղվող պայքարում։ Մեր մեծ Հայրենիքի բոլոր ծայրերում օրեցօր լայն թափ է ստանում հնգամյակը չորս տարում կատարելու համար ծավալված համաժողովրդական հայրենասիրական շարժումը։ Կոլխոզային գյուղի բազմահազար աշխատավորները արտասովոր ոգևորությամբ պայքարի են ելնում գյուղատնտեսության հետպատերազմյան վերելքի ստալինյան ծրագիրը հաջողությամբ իրականացնելու համար։

Կոլխոզային գյուղացիության այդ վեհ ցանկությունը վառ կերպով արտահայտված է Ալթայի երկրամասի կոլխոզնիկների, կոլխոզնիկուհիների, ՄՏ կայանների ու սով-

խոզների աշխատողների և գյուղատնտեսության մասնագետների կողմից ընկեր Ստալինին ուղղած նամակի մեջ։

«Գիտակցելով, որ 1948 թվականը մեր երկրի գյուղատնտեսության համար վճռական տարի է հետպատերազմյան ստալինյան հնգամյակն իրականացնելու գործում,— ասում են ալթայցիներն իրենց նամակում,— մենք, հաշվելով մեր հնարավորությունները, լայնորեն ծավալելով սոցիալիստական մրցությունը երկրամասի գյուղատնտեսության բոլոր աշխատողների մեջ՝ գյուղատնտեսության հետագա վերելքի համար, 1948 թվականին ստանձնում ենք հետևյալ պարտավորությունները.

Գարնանացան կուլտուրաների ցանքատարածությունն ընդարձակել 616 հազար հեկտարով, այդ թվում գարնանացան ցորենինը՝ 430 հազար հեկտարով։ Այսպիսով, գարնանացան ցորենի ցանքատարածությունը կոլխոզներում և սովխոզներում կկազմի 2 միլիոն հեկտար և համարյա կհասնի նախապատերազմյան մակարդակին։

Մենք որոշել ենք զգալի չափով բարձրացնել գարնանացան ցորենի բերքատվությունը և ամբողջ երկրամասում հավաքել յուրաքանչյուր հեկտարից ոչ պակաս քան



80—85 փութ ցորեն։ Երկրամասի բազմաթիվ կոլխոզներ, բրիգադաներ և օղակներ առաջնորդին խոսք են տալիս ընթացիկ տարում գարնանացան ցորենի ցանքատարածությունների յուրաքանչյուր հեկտարից հավաքել 180—200 փութ բերք։

Ալթայցիները շատ մեծ և լուրջ պարտավորություններ են ստանձնել։ Բայց նրանք վստահ են իրենց ուժերին և գիտեն իրենց խոսքը գործի վերածել։ Նրանք մեծ կարևորություն են տալիս գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացմանը, որի միջոցով կարելի է չտեսնված հաջողությունների հասնել։ Սովետական կառավարությունը մեր երկրի բոլոր կոլխոզներին, ինչպես և Ալթայի երկրամասի կոլխոզներին մեծ օգնություն է ցույց տալիս, ուժեղացնելով նրանց տեխնիկական բազան, ավելացնելով ՄՏ կայանների թիվը, հարստացնելով վերջիններիս մեքենայական պարկը։ Սակայն բերքատվության բարձրացման գործում վճռական նշանակություն ունի նաև այդ տեխնիկայի լավագույն օգտագործումը, գյուղատնտեսական մեքենաների բարձր արտադրողականությունը, որի համար անդուլ կերպով պայքարում են ալթայցիները։ Առաջնորդին ուղղված նրանց նամակում ասված է.

«Ցանքատարածությունների ընդարձակումը, մեր դաշտերի բերքատվության խիստ բարձրացումը մենք չենք պատկերացնում առանց երկրամասի մեքենատրակտորային կայանների աշխատանքի հետագա բարելավման։ 1948 թվականին երկրամասի ՄՏ կայանները՝ 1947 թվականի համեմատությամբ 2 միլիոն հեկտար, իսկ նախապատերազմյան 1940 թվականի համեմատությամբ 1 միլիոն 900 հազար հեկտար ավելի վար կկատարեն։ Խիստ կբարձրանա յուրաքանչյուր 15 ուժանոց տրակտորի արտադրողականությունը»։

Ալթայի տրակտորիստները խոստանում են ամբողջ երկրամասի ՄՏ կայաններում 15 ուժանոց տրակտորի արտադրողականությունը հասցնել 700—800 հեկտարի։ Ալթայի տրակտորիստների մեջ առաջ է եկել ու ծավալվում է «հազարականների» շարժումը. արդեն 400 տրակտորային բրիգադաների տրակտորիստներ ընդգրկված են այդ հիանալի շարժման մեջ և պարտավորվել են յուրաքանչյուր տրակտորի արտադրողականությունը հասցնել 1000 հեկտարի։

Ընկեր Ստալինին ուղղված նամակի մեջ Ալթայի երկրամասի գյուղատնտեսության աշխատողները խոստանում են նաև ընդար-



ձակել ցելի ու ցրտահերկի տարածությունները, ավելի արագորեն զարգացնել անասնաբուծությունն ու այգեգործությունը և ժամկետից առաջ կատարել հարազատ պետության հանդեպ իրենց բոլոր պարտավորությունները։

Անցյալ տարվա նման ալթայցիները հանդես են գալիս որպես համամիութենական սոցիալիստական մրցության նախաձեռնողներ։

«Մեր խոսքը, ընկեր Ստալին,— ասված է նրանց նամակում,— անխախտ է ու հաստատ։ Կոլխոզային Ալթայը պատվով կկատարի իր պարտավորությունները։

Մենք կոչ ենք անում Սովետական Միության գյուղատնտեսության բոլոր աշխատողներին՝ ծավալել սոցիալիստական մրցություն, 1948 թվականին գյուղատնտեսության նոր վերելք ստեղծելու համար»։

Ալթայցիների կոչը լայն արձագանք է գտել Սովետական Հայաստանի կոլխոզներում։ Ամենուրեք կոլխոզնիկներն ու կոլխոզնիկուհիները, սոցիալիստական մրցության մեջ մտնելով, պարտավորություններ են ստանձնում 1948 թվականը գյուղատնտեսական մթերքների և հումքի առատության տարի դարձնելու համար։ Այսպես, օրինակ,

Ախտայի շրջանի Նահումյանի անվան գյուղատնտեսական արտելի կոլխոզնիկներն ու կոլխոզնիկուհիները պարտավորություն են ստանձնել 1948 թվականին աշնանացան ցորենի յուրաքանչյուր հեկտարից ստանալ 15 ցենտներ բերք։ Այդ նույն կոլխոզից Սոցիալիստական Աշխատանքի Հերոսներ Ս. Հովհաննիսյանը և Ս. Հունանյանը խոստացել են իրենց օղակների մշակած արտերի բերքատվությունը հասցնել հեկտարից 35—40 ցենտների։

Թալինի շրջանի Ջիթհանքով գյուղի կոլխոզնիկները խոստացել են աշնանացանի յուրաքանչյուր հեկտարից հավաքել 16—18 ցենտներ բերք։ Նոր Բայազետի շրջանի Հացառատ գյուղի կոլխոզնիկները պարտավորվել են յուրաքանչյուր հեկտարից ստանալ 17 ցենտներ միջին բերք։

Բայց սոցիալիստական պարտավորությունների ստանձնումը մեծ գործի միայն սկիզբն է։ Գլխավորը այդ պարտավորությունների կատարումն է, որի համար պետք է ծավալվի սոցիալիստական մրցություն։

Ընկեր Ստալինը տվել է սոցիալիստական մրցության կլասիկ բնորոշումը։ «Սոցիալիստական մրցությունն ասում է, ոմանք վատ են աշխատում, մյուսները՝ լավ, ոմանք՝ ա-



վելի լավ,— հասիր լավագույններին և ձեռք բեր ընդհանուր վերելք»։ Ահա թե ինչը պետք է հիմնականը լինի սոցիալիստական մրցությունը կազմակերպելիս։

Գյուղատնտեսական դաշտային աշխատանքների ժամանակաշրջանում կոլխոզնիկների և կոլխոզնիկուհիների մեջ սոցիալիստական մրցության կազմակերպիչը հանդիսանում է ագիտատորը, որը պարտիական կազմակերպության ղեկավարությամբ իր ամենօրյա քաղաքական-մասսայական աշխատանքի միջոցով մոբիլիզացնում է կոլխոզնիկներին, բարձրացնում նրանց աշխատանքային ակտիվությունը, կազմակերպում և ծավալում է սոցիալիստական մրցությունը բրիգադաների, օղակների ու առանձին կոլխոզնիկների միջև, արտադրական առաջադրանքները կատարելու և գերակատարելու համար։

Որպեսզի սոցիալիստական մրցությունն ավելի գործարար բնույթ ստանա և ավելի մեծ արդյունք տա, անհրաժեշտ է, որ ագիտատորը հաշվի առնի մի քանի կարևոր հանգամանք։ Նախ՝ մրցության ամեն մի մասնակից պետք է պարզ կերպով իմանա, թե ինչպիսի ցուցանիշների համար է պայքարելու ինքը, իր բրիգադան, օղակը և կոլխո-

ղը։ Քիչ չեն դեպքերը, երբ կոլխոզնիկը սոցիալիստական մրցության մեջ լինելով, չգիտե անգամ իր արտադրական նորման, իր օրակին տրված առաջադրանքը, չգիտե սոցիալիստական մրցության պայմանները, որոնք կատարելու դեպքում միայն, նա կարող է առաջնություն շահել։ Պարզ է, որ այդպիսի դեպքում չի կարելի սոցիալիստական մրցությունից լավ արդյունքներ սպասել։

Դաշտում աշխատող կոլխոզնիկն իր նորման և պարտավորությունը կատարելու գործում ավելի մեծ ձգտում է հանդես բերում այն ժամանակ, երբ նա այդ ամենի մասին պարզ պատկերացում ունի։ Այս դեպքում նա ձգտում է ոչ միայն կատարել, այլև գերակատարել նորման ու պարտավորությունը։ Ուստի կոլխոզնիկների միջև սոցիալիստական մրցությունը կազմակերպելիս, ագիտատորն իր աշխատանքը պետք է սկսի հենց վերևում հիշատակված հարցից — նա պետք է կոլխոզնիկին պարզաբանի, նրա գիտակցությանը հասցնի, թե ինչպիսի ցուցանիշների համար է պայքարելու նա, մասնակցելով սոցիալիստական մրցությանը։

ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան պլենումն իր որոշման մեջ նշեց, որ «Այժմ, խաղաղ շինարարության անցնելուց հետո, մեր



պարտիայի և պետության առջև նորից, որպես ամենաանհետաձգելի խնդիր, ամբողջ հասակով ծառացել է գյուղատնտեսության այնպիսի վերելքի ապահովումը, որը թույլ տար ամենակարճ ժամկետում ստեղծել պարենի առատություն՝ մեր բնակչության համար, հումքի՝ թեթև արդյունաբերության համար և պետական անհրաժեշտ պարենային ու հումքային ռեզերվների կուտակում»։

Պարտիայի այս ցուցումը պետք է դրված լինի սոցիալիստական մրցության հիմքում։ Գյուղատնտեսության հետպատերազմյան վերելքի ստալինյան ծրագիրը հաջողությամբ իրագործելու համար պահանջվում է, որ մեր կոլխոզների, սովխոզների և ՄՏՍ կայանների շարքում ետ մնացողներ չլինեն, որ բարձր բերք ստանան բոլոր կոլխոզներն ու սովխոզները։ Ուստի, սոցիալիստական մրցությունը պետք է կազմակերպել այնպես, որ նա ընդհանուր վերելք առաջացնի, որ ետ մնացողները մրցության միջոցով հասնեն առաջավորներին։

Չպետք է մոռանալ, որ կոլխոզում գյուղատնտեսական աշխատանքները չեն կարող հաջող ընթանալ, եթե այնտեղ միայն մեկ-երկու տասնյակ մարդիկ են բարձր նորմա կատարում, իսկ կոլխոզնիկների զգալի մա-

ըը իր նորման թերակատարում է։ Սոցիալիստական մրցության միջոցով պետք է ձգտել և հասնել այնպիսի վերելքի, որ արտադրական նորմաները կատարվեն բոլորի կողմից։ Այդ դեպքում միայն կստեղծվի իսկական ընդհանուր վերելք։

Այս տեսակետից կարևորագույն նշանակություն ունի առաջավորների փորձի լայն տարածումը և կոնկրետ կիրառումը գյուղատնտեսության մեջ։ Բերենք այդպիսի մի օրինակ։ Սիսիանի շրջանի Բռնակոթ գյուղի կոլխոզն անցյալ տարի հրաշալի բերք ստացավ. կոլխոզի ինն օղակներ գարնանացան ցորենի յուրաքանչյուր հեկտարից հավաքեցին 32—41 ցենտներ բերք. աշխօրին բաշխվեց ավելի քան ութ կիլոգրամ հացահատիկ։

Այդպիսի աչքի ընկնող հաջողության ձեռք բերելու գործում մեծ դեր խաղաց սոցիալիստական մրցությունը։ Սկզբնական պարտիական կազմակերպությունը յուրաքանչյուր բրիգադայում առանձնացրել էր 2—3 ագիտատոր, որոնք կոլխոզնիկներին օգնում էին առանձնած պարտավորություններն օրինակելիորեն կատարելու գործում։ Պարտավորությունները կազմվել էին ըստ աշխատանքի սեզոնների և բավականաչափ կոնկրետ էին, որպիսի հանգամանքը նպաստում էր սո-



ցիալիստական մրցությունն ավելի գործաբար դարձնելուն։

Երբ պարտիական կազմակերպությանը հայտնի դարձավ, որ կոլխոզի երկրորդ ու չորրորդ բրիգադաներում աշխատանքը լավ չի ընթանում, և մնացող բրիգադաները առաջավորներին հասնելու նպատակով գործի դրվեց սոցիալիստական մրցության մեծ և ստեղծարար ուժը։ Գումարվեց այդ երկու բրիգադաներում աշխատող կոլխոզնիկների և կոլխոզնիկուհիների ժողով. այստեղ եկան երրորդ առաջավոր բրիգադայի բրիգադիրը, մաճկալը և ագիտատորները։ Սրանք մանրամասն պատմեցին իրենց բրիգադայում աշխատանքի կազմակերպման մասին, հաղորդեցին իրենց աշխատանքի դրական փորձը։

Դրանից հետո դրությունն սկսեց փոխվել։ Երկու ետ մնացող բրիգադաները, կիրառելով առաջավորների փորձը, կարճ ժամանակից հետո հավասարվեցին նրանց։ Եվ երբ ավարտվեց բերքահավաքը, պարզվեց, որ նրանք ստացել էին նույնքան բերք, որքան առաջավոր բրիգադաները։ Եվ այսպես, առաջավոր փորձի տարածման շնորհիվ Բռնակոթի կոլխոզում բոլոր բրիգադաները

և օղակները գերակատարեցին բերքատվության առաջադրանքները։

Պարտիան մեծ նշանակություն է տալիս գիտության նվաճումների և առաջավորների փորձի արմատավորմանը գյուղատնտեսության մեջ։ ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան պլենումն այդ մասին կարևոր ցուցում է տվել. «Նպատակ դնելով լայնորեն ցուցադրել և արմատավորել սովխոզների, մեքենա-տրակտորային կայանների, կոլխոզային անասնաբուծական ֆերմաների, գիտական հիմնարկությունների, լավագույն շրջանների, մարզերի, երկրամասերի ու ռեսպուբլիկաների, ինչպես նաև սոցիալիստական գյուղատնտեսության առաջավորների ու կազմակերպիչների նվաճումները և ամեն կերպ ծավալել գյուղատնտեսության հետագա վերելքի համար սոցիալիստական մրցությունը, անհրաժեշտ համարել 1950 թվականից վերսկսել Համամիութենական Գյուղատնտեսական ցուցահանդեսի աշխատանքը»։

Կենսագործելով ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան պլենումի որոշումները, անցյալ տարի մեր կոլխոզնիկներն ու կոլխոզնիկուհիները աշխատանքի հարուստ փորձ ձեռք բերեցին։ Նոր Բայազետի, Ախտայի, Թալի-



նի, Կոտայքի, Սիսիանի և այլ շրջաններում բազմաթիվ օղակներ հեկտարից 30—40 ցենտներ հացահատիկի բերք հավաքեցին։ Գյուղատնտեսության 15 լավագույն առաջավորներ արժանացան Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի բարձր կոչման։ Շատ կոլխոզնիկներ և կոլխոզնիկուհիներ պարգևատրվեցին Լենինի, Աշխատանքային Կարմիր Դրոշի շքանշաններով ու մեդալներով։ Բարձր բերքի վարպետների փորձը լայնորեն մասսայականացնելը ագիտատորների առաջնահերթ խնդիրն է, սոցիալիստական մրցության հաջողության գլխավոր պայմաններից մեկը։

Գարնան դաշտային աշխատանքները մի շարք շրջաններում արդեն սկսվել են։ Շուտով ռեսպուբլիկայի բոլոր վայրերում կոլխոզնիկներն ու կոլխոզնիկուհիները դուրս կգան դաշտ։ Դաշտային աշխատանքների հենց առաջին օրերից ծավալենք լայն սոցիալիստական մրցություն գյուղատնտեսության նոր հզոր վերելքի համար։

Ա. ՊԵՏՐՈՍՅԱՆ

# ԻՆՉՊԵՍ ԵՆՔ ՄԵՆՔ ՊԱՅՔԱՐՈՒՄ ԲԱՐՁՐ ԲԵՐՔԻ ՀԱՄԱՐ

*Մխչյանի շրջանի Բորիսովկա գյուղի կոլխոզն անցյալ տարի մշակել էր 650 հեկտար գարնանացան ցորեն։ Սահմանված էր յուրաքանչյուր հեկտարից 9 ցենտներ միջին բերք ստանալու առաջադրանք, որը կոլխոզը գերակատարեց 50 տոկոսով։ Կոլխոզի ինն օղակներ ստացան հեկտարից 32—41 ցենտներ բերք։ Այսպես օրինակ, Հեղուշ Ղաբիբյանի օղակը 8 հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից հավաքեց 36,8 ցենտներ հացահատիկ, Սերյոժա Ղազարյանի օղակը՝ 37,9 ցենտներ, իսկ Ռուբեն Խուդավերդյանի օղակը՝ 40,3 ցենտներ։*

*Այդպիսի լավ բերքի շնորհիվ մենք ժամանակին կատարեցինք պետության հանդեպ մեր բոլոր պարտավորությունները, առանձնացրինք բոլոր տեսակի հանրային ֆոնդերը և, այդ բոլորից հետո, յուրաքանչյուր աշխօրի դիմաց բաշխեցինք 8,3 կիլո-*



*գրամ հացահատիկ։ Կոլխոզնիկներն իրենց աշխօրերի դիմաց ստացան նաև մեծ քանակությամբ յուղ, պանիր, կարտոֆիլ, դրամ և այլն։ Կոլխոզնիկ Ս. Բաղալյանի ընտանիքը, որ 14 շնչից է բաղկացած և ունի 6 աշխատավոր, վաստակել էր 1400 աշխօր, որի դիմաց կոլխոզից ստացավ 780 փութ հացահատիկ, 140 կիլոգրամ յուղ, 300 կիլոգրամ պանիր, 131 փութ կարտոֆիլ, 4.550 ռուբլի դրամ և այլն։ Այդպիսի օրինակները շատ են։ Մեր գյուղում բնակություն հաստատած 24 հայրենադարձ ընտանիքներն ստացել են այնքան պարենամթերք, որը նրանց կբավարարի մի քանի տարի։ Օրինակ, հայրենադարձ Խաչիկ Ինջիղուլյանի ընտանիքը, որը բաղկացած է 11 շնչից, իր աշխօրերի դիմաց ստացել է 600 փութ հացահատիկ, 80 կիլոգրամ յուղ, 170 կիլոգրամ պանիր և այլ մթերքներ։*

*Գիտակցելով կոլխոզի կազմակերպականտնտեսական ամրապնդման նշանակությունը և կենսագործելով ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան պլենումի որոշումը, մեր կոլխոզնիկները տարեվերջի իրենց հաշվետու ժողովում որոշում ընդունեցին հանրային ֆոնդերն առանձնացնել արտելի կանոնա-*

դրությամբ նախատեսված ամենաբարձր չափերով։ Օրինակ, պարենային ֆոնդին մենք հատկացրել ենք 2 տոկոս, անբաժանելի դրամագլխին՝ 15 տոկոս, կուլտֆոնդին՝ 2 տոկոս, սերմֆոնդին՝ հատկացրել ենք նախատեսված չափից 200 ցենտներ ավելի, ապահովագրական ֆոնդը նույնպես առանձնացված է լրիվ, մեկ տոկոսի չափով ֆոնդ ենք առանձնացրել հայրենադարձ ընտանիքներին օգնելու համար։ Եվ այս բոլորից հետո, ավելի քան 2.200 փութ հացահատիկ ենք հանձնել պետությանը 1948 թվի հաշվին։

Իսկ ի՞նչպես մենք կարողացանք գարնանացանի այդպիսի առատ բերք աճեցնել։

Այստեղ ամենից առաջ պետք է ասել, որ բարձր բերք ստանալու համար վճռական նշանակություն ունի ցանքի և մշակության ժամկետների պահպանումը. գյուղատնտեսական ամեն մի աշխատանք լավ արդյունք է տալիս, երբ նա կատարվում է ժամանակին։ Գարնանացանի վաղ ժամկետները պահպանելու համար մենք արհեստականորեն արագացնում ենք վարն ու ցանքը։ Տարիների փորձը ցույց է տվել, որ հաճախ ցանքը հնարավոր չի լինում ժամանակին



կատարել, ձյունը ուշ հալչելու հետևանքով։ Եվ ահա մենք գործադրում ենք շատ հասարակ մի միջոց— ձմռան վերջերին արտերում ձյան շերտի վրա շաղ ենք տալիս մոխիր, որն արագացնում է ձնհալի պրոցեսը և հնարավորություն է տալիս ցանքը կատարել վաղ ժամկետում։

Երկրորդ կարևոր հարցը ագրոտեխնիկայի կիրառումն է։ Մենք գարնանացանը կատարում ենք 25-27 սանտիմետր խորությամբ լավ հերկի վրա. նախորդ տարում կատարված վաղ ցելը հերկում ենք նաև աշնանը, ապա հաջորդ տարին երկու անգամ փոցխում և ցանում։ Հողի այսպիսի մշակության հետևանքով խիստ բարելավվում է նրա կազմությունը։ Այնուհետև, սկսում ենք ցանքի մշակությունը, ըստ որում մեծ ուշադրություն ենք դարձնում քաղհանի որակին։ Մեր արտերում տարածված է մի տեսակ փուշ, որի արմատները խիտ ցանցով փռվում են 30-40 սանտիմետր խորությամբ, և եթե այդ փուշը չոչնչացվի, մեր բերքի մինչև 40 տոկոսը կարող է կորստի մատնվել։ Երբ հացաբույսը հասնում է մեկ թիզ բարձրության, մենք սկսում ենք փշերը արմատախիլ անել, տանել շատ հեռու և չորացնել։ Բացի այդ,

1—2 անգամ քաղհան ենք կատարում, արտերի մեջ չթողնելով ոչ մի մոլախոտ։

Չափազանց կարևոր է սերմացուի հարցը։ Շատ կոլխոզներում սերմացուն մի քանի անգամ զտելուց հետո էլ դարձյալ կոնդիցիոն չի դառնում։ Դրա պատճառը ոչ թե վատ զտումն է, այլ սերմնադաշտի վատ մշակումը։ Սերմացուի որակը բարձր կլինի այն ժամանակ, երբ հենց սկզբից հոգ տարվի նրա որակի մասին։ Ուստի մենք սերմնադաշտերին հատկացնում ենք ամենից լավ հողերը, ցանքը կատարում ենք ագրոտեխնիկական լավագույն ժամկետներում, ցանքից առաջ ագրոնոմի ցուցումներով անց ենք կացնում հողի նախացանքային մշակությունը, այնուհետև քաղհան, սորտային քաղհան, իսկ հունձը կատարում ենք նորից մասնագետի ցուցումով, այսինքն լրիվ հասունության շրջանում։ Սերմնադաշտի բերքը հնձում, կալսում և տեղափոխում ենք առանձին, ըստ որում կալսելուց առաջ կալատեղերը լավ մաքրում ենք, ապա սպիտակ հող փռում և սվաղում։ Նախքան պահեստ փոխադրելը, հենց կալում սերմացուն զտում ենք, իսկ պահեստները ախտահանում։ Բնական է, որ այդ բոլորից հետո սերմացուն կլինի բարձր որակի։



Այժմ՝ պարարտացման մասին։ Ագրոտեխնիկական այդ կարևոր միջոցառումը մենք կիրառում ենք անթերի. մենք մեր դաշտերն ենք փոխադրում շատ ավելի պարարտանյութ, քան մեզ առաջադրված է լինում պլանով։ Օրինակ, ընթացիկ տարվա պլանի համաձայն, մենք պետք է դաշտ փոխադրենք 2.200 տոննա, այնինչ արդեն փոխադրել ենք 2.500 տոննա պարարտանյութ։ Պարարտացման միջոցներից մեկն է նաև օժանդակ սնուցումը։ Այդ նպատակի համար, մենք օգտագործում ենք գոմաղբը, մոխիրը, ինչպես նաև միջնակների խոպան հողերը։ Բրիգադիրները և օղակավարները խնամքով ստուգում են ցանքերի վիճակը, և որտեղ բույսերը թույլ են աճել, տալիս են լրացուցիչ սնուցում։

Ես կպատմեմ նաև կրծողների դեմ մեր տարած պայքարի մասին։ Եթե այդ վնասատուների դեմ պայքար չտարվի, կարելի է ասել, որ մենք կզրկվենք մեր ամբողջ բերքից։ Ապացուցված է, որ մեկ դաշտային մուկը տարվա ընթացքում տալիս է մոտ 800 սերունդ։ Իսկ այդպես արագ աճող վնասատուն շատ մեծ կորուստ կարող է պատճառել։ Բայց մեր կոլխոզնիկները, ուժեղ պայքար մղելով և ոչնչացնելով այդ վնասատունե-

րին, փրկում են բերքը։ Օրինակ, անցյալ տարի միայն Գ. Աղալարյանի օղակն իր հողամասում ոչնչացրեց 15 հազար դաշտային մուկ։ Վնասատուների դեմ մենք պայքարում ենք հետևյալ ձևով։ Նախ՝ աշնան վերջին թունավոր փոշի ենք շաղ տալիս կրծողների բներում, ըստ որում այդ միջոցը մենք գործադրում ենք ոչ միայն վարելահողերում, այլև արոտներում, որտեղ նույնպես կրծողները ձմեռում են։ Այնուհետև, գարնանը երկրորդ անգամ ենք փոշի շաղ տալիս, որից հետո բները ստուգում ենք, նրանց մեջ ջուր լցնելով։ Այդպիսով մենք ոչնչացնում ենք կրծողներին։

Ամեն մի լավ ձեռնարկում կարող է ձախողվել, եթե կոլխոզում չլինի աշխատանքային ամուր կարգապահություն և աշխատանքը դրված չլինի ճիշտ հիմքերի վրա։ Մեզ մոտ բրիգադաներում և օղակներում խստիվ վերացված է հոսունությունը. կադրերը դասավորված են ըստ իրենց ընդունակությունների և մասնագիտության. մեր մաճկալները առնվազն 20 տարվա աշխատանքի փորձ ունեն, հնձվորները և մյուս աշխատողները նույնպես իրենց գործի վարպետներ են։ Աշխատանքը մեծ մասամբ կատարվում է անհատական գործավարձով։ Աշխատելով բար-



ձր արտադրողականությամբ, գերակատարելով արտադրական նորմաները և աճեցնելով բարձր բերք, կոլխոզնիկները մասսայաբար լրացուցիչ վարձատրություն են ստանում։ Օրինակ, երրորդ բրիգադայի 74 մարդուց 71-ը լրացուցիչ վարձատրություն են ստացել։ Արտադրական նորմաները մեզ մոտ մշակված են այնպես, որ կարևոր աշխատանքներում զբաղված մարդիկ ավելի բարձր վարձատրություն են ստանում, քան երկրորդական աշխատանք կատարողները։

Այս տարի մենք ընդարձակելու ենք ցանքերի տարածությունը, որի համար ունենք ցել։ Պարարտացման պլանը գերակատարել ենք, սերմացուն և գյուղատնտեսական ամբողջ ինվենտարը պատրաստ են, լավ վիճակի մեջ են բանող անասունները, որոնց տրվում է ուժեղ կեր։

Կոլխոզնիկները կազմ ու պատրաստ սպասում են գարնանային աշխատանքներին։ Անցյալ տարվա հաջողությունները այս տարի մենք կկրկնապատկենք։ Այս ձգտումով են համակված մեր կոլխոզի աշխատավորները։

Ս. ԱՎԵՏԻՍՅԱՆ

(Սիսիանի շրջանի Բորիսովկա գյուղի կոլխոզի վարչության նախագահ, Լենինի շքանշանակիր)

# ՍԵՎԱՆ-ԶԱՆԳՎԻ ԿԱՍԿԱԴԸ

Հայաստանի հիմնական հարստություններից է ջուրը։ Ջուրը մեր ժողովրդական տնտեսության մեջ օգտագործվում է ոռոգման համար, էժան էլեկտրական էներգիա ստանալու համար, որոնց հիմքի վրա զարգանում են Սովետական Հայաստանի սոցիալիստական արդյունաբերությունը և գյուղատնտեսությունը։

Մեր Ռեսպուբլիկայի համար ինչպես ոռոգման, այնպես էլ էժան էլեկտրական էներգիայի վիթխարի աղբյուր է հանդիսանում Սևանա լիճը, որն ունի հսկայական մակերես, միևնույն ժամանակ չափազանց բարձր դիրք։ Որ կողմից էլ նայելու լինենք Սևանա լճին — կղզուց, ափից, ամեն մի եղանակի նա հիացմունք է պատճառում իր գեղեցկությամբ։

Բայց Սևանա լիճը սքանչելի է ոչ միայն իր արտաքին տեսքով։ Այն է, ավելի մեծ



հետաքրքրություն ու կարևորություն է ներկայացնում տնտեսական տեսակետից։

Սևանա լճից սկիզբ է առնում Զանգու գետը, որի անկումը, կամ ինչպես տեխնիկական լեզվով ասում են՝ ճնշումը կազմում է 1000 մետր։ Այդ ճնշումն էլ հենց Սևան—Զանգվի կասկադի վրա կառուցվող ութը հզոր էլեկտրակայաններում պետք է օգտագործվի էլեկտրական էներգիա ստանալու համար։

Բայց Զանգու գետի միջոցով Սևանա լճից արտահոսում է տարեկան միայն 200 միլիոն խորանարդ մետր ջուր։ Միևնույն ժամանակ լճի մակերեսը ապարդյուն կերպով գոլորշիացնում է 1 միլիարդ 200 միլիոն խորանարդ մետր ջուր, այսինքն վեց անգամ ավելի, քան արտահոսում է Զանգվի միջոցով։ Սովետական մարդու համարձակ միտքը որոշեց հավասարակշռություն ստեղծել լիճը ներհոսող և լճից արտահոսման ու գոլորշիացման միջոցով ծախսվող ջրի քանակի միջև։ Այդ նպատակով էլ որոշվեց փոքրացնել լճի մակերեսը։

Տարիների ընթացքում կատարված գիտական հետազոտությունները ցույց տվեցին,

որ լճի մակերեսը փոքրացնել հնարավոր է։ Հետազոտությունները ապացուցեցին, որ լճի գոլորշիացումը ոչ մի կապ չունի մթնոլորտային տեղումների հետ նրա ավազանում, ինչպես նաև Արարատյան դաշտավայրում։ Հետազոտությունները նաև ցույց տվին, որ լճի մակերևույթի իջեցումը համարյա ոչ մի ազդեցություն չի կարող ունենալ Հայաստանի կլիմայի վրա։

Դրա հետ միասին տնտեսական, էներգետիկ ու հիդրոտեխնիկական հաշիվները հաստատեցին լճի մակերևույթի իջեցման ժողովրդա-տնտեսական մեծ նշանակությունը։

Այդ բանը ցույց տանք թվերով։

Առանց Սևանա լճի մակերևույթն իջեցնելու, Զանգվի միջոցով Արարատյան դաշտավայրի ոռոգման համար կարելի է օգտագործել տարեկան միայն 640 միլիոն խորանարդ մետր ջուր (որի մի մասը գարնանային ջրեր)։ Այնինչ լճի մակերևույթն իջեցնելու դեպքում կարելի է տարեկան օգտագործել 1 միլիարդ 800 միլիոն խորանարդ մետր ջուր։ Այս նշանակում է առաջին դեպքում Արարատյան դաշտավայրում լճի ջրերով ոռոգել 64 հազար հեկտար, իսկ երկրորդ դեպքում՝ մոտ 200 հազար հեկտար հող։



Իսկ 1000 մետր ճնշման պայմաններում, որ գոյանում է Զանգու գետի անկման ժամանակ, Սևան—Զանգվի կասկադի վրա կառուցվող հիդրոկայանները կդառնան էլեկտրական էներգիայի անսպառ աղբյուր։

Նախքան Հայաստանում սովետական իշխանության հաստատվելը, մի քանի անգամ դրվել է Սևանա լճի ջրերն օգտագործելու խնդիրը, բայց միայն սովետական իշխանության օրով հնարավոր եղավ ձեռնարկել Սևանի պրոբլեմի իրականացմանը։

Տասը տարի առաջ սկսվեց լճի մակերևույթի իջեցումը, որ վերջին տարիներս զգալիորեն ուժեղացել է և 1948 թվականին պետք է հասնի իր առավելագույն չափերին։ Լճի մակերևույթը մինչև այժմ իջել է միայն 2,5 մետրով, իսկ ընդամենը իջեցվելու է 50 մետր, որ կկատարվի 50—60 տարվա ընթացքում։

Սևան—Զանգվի կասկադի վրա կառուցված հիդրոկայաններից Քանաքեռի հիդրոէլեկտրակայանն արդեն 1937 թվականից Հայաս-

տանի էլեկտրոքիմիական արդյունաբերության, գյուղատնտեսության և բնակչության էներգիա մատակարարող հիմնական բազան է հանդիսանում։ Այս տարի կավարտվի Լճային ստորերկրյա հիդրոէլեկտրակայանի կառուցումը լճի ափին, Զանգվի գետաբերանի մոտ։ Այդ կայանը հնարավորություն կտա ավելացնելու ջրի արտահոսումը լճից, որ այժմ սահմանափակված է ժամանակավոր ջրանցքով։

Ներկայումս սկսվել է Սևան—Զանգվի կասկադի ամենահզոր հիդրոկայանի՝ Գյումուշգէսի կառուցումը, որը պետք է շահագործման հանձնվի այս հնգամյակի վերջում և կտա Սևան—Զանգվի կասկադի բոլոր էլեկտրակայանների էներգիայի մոտ 40 տոկոսը։

*

*ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԹԵՄԱՆԵՐԻ ՇՈՒՐՋԸ*

## ՉԻՆԱՍՏԱՆԻ ԱԶԱՏԱԳՐՎԱԾ ՇՐՋԱՆՆԵՐՈՒՄ

Առաջին ազատագրված դեմոկրատական շրջանները Չինաստանի աշխատավորները կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ ստեղծեցին ավելի քան 20 տարի առաջ։ Գոմինդանյան զորքերն այդ շրջանների դեմ ձեռնարկեցին մի շարք արշավանքներ, բայց ամեն անգամ հանդիպում էին չինական Կարմիր բանակի վճռական դիմադրությանը։

1937-1945 թվականներին իմպերիալիստական Ճապոնիայի դեմ չին ժողովրդի մղած պատերազմի ժամանակ դեմոկրատական զինված ուժերը, Չինաստանի կոմպարտիայի ղեկավարությամբ, ճապոնական զավթիչներից ազատագրեցին հսկայական տերիտորիա։ Ստեղծվեցին մի շարք նոր շրջաններ, որտեղ հաստատվեց ժողովրդական իշխանություն։

Ազատագրված շրջանների ընդարձակումը տագնապ առաջացրեց ոչ միայն Գոմինդա-

նի, այլև ամերիկյան իմպերիալիստների մեջ, որովհետև դեմոկրատական շարժումը լուրջ խոչընդոտ դարձավ Չինաստանում ԱՄՆ-ի զավթողական պլաններն իրականացնելու ճանապարհին։ Այդ հողի վրա ծնունդ առավ գոմինդանականների և ամերիկյան իմպերիալիստների ռեակցիոն բլոկը ընդդեմ չինական դեմոկրատների։ Ամերիկացիները վարժեցնում են գոմինդանյան բանակը, նրան մատակարարում են զենք ու զինամթերք, նյութական օգնություն են ցույց տալիս Գոմինդանին, իսկ վերջինս իր հերթին, նպաստում է, որ Չինաստանը դառնա ԱՄՆ-ի ռազմա-ստրատեգիական պլացդարմը։ Այսպիսով Գոմինդանը դարձել է օտարերկրյա իմպերիալիզմի կողմից Չինաստանն ստրկացնելու մի գործիք։

1945 թվականին Ճապոնիայի ջախջախումից և կապիտուլյացիայից կարճ ժամանակ հետո գոմինդանյան կառավարող վերնախավը, ամերիկյան իմպերիալիստների ակտիվ աջակցությամբ, նոր պատերազմ սկսեց ազատագրված շրջանների դեմ։ Սակայն ռեակցիոն ուժերին ոչ միայն չհաջողվեց ոչնչացնել ազատագրված շրջանները, այլև ժողովրդա-ազատագրական բանակի հարվածների տակ գոմինդանյան զորքերն սկսե-



ցին կրել պարտություն-պարտության հետևից։ Ազատագրված դեմոկրատական շրջանները զգալիորեն ընդարձակվեցին, ցույց տալով չինական դեմոկրատիայի անպարտելիությունը և ամերիկյան իմպերիալիզմի գործակալ Գոմինդանի նեխածության ու անկենսունակությունը։

Ազատագրված դեմոկրատական շրջանները ներկայումս գրավում են հսկայական տերիտորիա — 2 միլիոն 390 հազար քառակուսի կիլոմետր, կամ Չինաստանի ամբողջ տերիտորիայի քառորդ մասը։ Դա ավելի է, քան Անգլիայի, Ֆրանսիայի, Գերմանիայի, Իտալիայի և Իսպանիայի տերիտորիան միասին վերցրած։ Ժողովրդա-ազատագրական բանակի վերահսկողության տակ է գտնվում համարյա ամբողջ Մանջուրիան, Շանսի նահանգը, Հյուսիսային Շանսին. Ներքին Մոնղոլիայի մեծ մասը, Շանդուն նահանգի կենտրոնական մասը, Հեբեի, Հենանի, Ցզյանսուի և Անհոյի մեծ մասը (տես 49-րդ էջի քարտեզը)։

Ազատագրված շրջանների բնակչությունը կազմում է ավելի քան 168 միլիոն մարդ, այսինքն ամբողջ Չինաստանի բնակչության երրորդ մասը։ Այդպիսով, ազատագրված շրջաններում ապրում է չորս անգամ ավելի

*բնակչություն, քան Ֆրանսիայում, և զգալիորեն ավելի, քան ԱՄՆ-ում։ Հենց միայն ազատագրված Մանչուրիայի բնակչությունը կազմում է ավելի քան 33 միլիոն մարդ։*

*Ժողովրդա-ազատագրական բանակն ունի ավելի քան 2 միլիոն մարտիկ՝ կանոնավոր զորամասերում և մոտ 4 միլիոնանոց ժողովրդական միլիցիա (տեղական ինքնապաշտպանություն)։ Ժողովրդա-ազատագրական բանակը գլխավորում են փորձված հրամանատարներ՝ ազգային ու ազատագրական պայքարի հերոսներ Ջժու Դեն, Պեն Դե-հուայը, Ե Ցզյան-ինը, Լին Բյաոն, Հե Լունը, Լյու Բո-չենը, Ձեն Ին և ուրիշներ։ Այս գեներալների հրամանատարությամբ ժողովրդա-ազատագրական բանակը մի շարք փայլուն հաղթանակներ տարավ ճապոնական զորքերի դեմ, և այժմ ոչ պակաս հաջողությամբ մարտնչում է թվական ու նյութական գերակշռություն ունեցող գոմինդանյան բանակի դեմ։ Ժողովրդա-ազատագրական բանակի հաղթանակները բացատրվում են նրա շարքային ու հրամանատարական կազմի քաղաքական-քաղաքական բարձր մակարդակով, երկաթյա կարգապահությամբ, նրա հրամանատարների ռազմական վարպետությամբ և,*



*որ գլխավորն է, ժողովրդի համակրանքով ու աջակցությամբ։*

*Չինաստանի կոմունիստական պարտիայի նախաձեռնությամբ, ազատագրված շրջաններում կատարվել են քաղաքական ու տնտեսական խոր վերափոխումներ։ Ժողովրդին արրված են դեմոկրատական լայն ազատություններ։ Կանայք ստացել են տղամարդկանց հավասար իրավունքներ։ Բոլոր շրջաններում ստեղծված է ժողովրդական դեմոկրատական իշխանություն։ Իշխանության գյուղական, շրջանային, գավառային և պրովինցիալ օրգանների ընտրում է ամբողջ ժողովուրդը։ Դրանք կիրառում են արմատական դեմոկրատական վերափոխումներ, որոնց մասին Չինաստանի աշխատավորները երազել էին դարեր շարունակ։ Ազատագրված շրջանների տերիտորիայում իշխանության օրգանները կազմված են բանվոր դասակարգի, գյուղացիության, առաջավոր ինտելիգենցիայի և մանր բուրժուազիայի ներկայացուցիչներից։ Իշխանության օրգաններում, ինչպես և շրջանների ամբողջ կյանքում ղեկավար դեր է խաղում Չինաստանի կոմունիստական պարտիան։*

*Ճապոնիայի դեմ մղված պատերազմի և քաղաքացիական պատերազմի ժամանակա-*

միջոցում չինական կոմպարտիայի հեղինակությունն անչափ աճեց։ Նա վայելում է ոչ միայն ազատագրված շրջանների, այլև Չինաստանի բոլոր աշխատավորների աջակցությունն ու սերը։ Ներկայումս նա աշխարհի ամենախոշոր կոմունիստական պարտիաներից է, որն ունի մոտ 2 միլիոն 700 հազար անդամ։ Կոմպարտիան գլխավորում է չին ժողովրդի ազատագրության համար պայքարող մեծ մարտիկ, ժողովրդի առաջնորդ Մաո Ցզե-դունը։

Չինաստանի ազատագրված շրջաններում ժողովրդական իշխանությունն օրեցօր ամրապնդվում է։ Վարչական ապարատը մաքրված է գոմինդանյան գործակալներից։ Համարձակորեն ղեկավար աշխատանքի են առաջ քաշվում ժողովրդին անձնվիրաբար ծառայելու, նրա ազատագրության գործին նվիրվածության ոգով դաստիարակված նոր կադրեր։

Չինաստանի ազատագրված շրջաններում ոչնչացված է ազգային ճնշումը։ Դեմոկրատական իշխանությունն իր հիմնական ուշադրությունը նվիրում է հողային ռեֆորմի կիրառմանը։ Կալվածատերերի, ճապոնական գաղութարարների և դավաճանների հողն ու գույքը բաշխված են գյուղացիներին։ 60 մի-



լիոն հողազուրկ և սակավահող գյուղացիներ հող են ստացել։ Շատ գյուղացիներ ստացել են տներ, անասուններ։ Օրինակ, Մանջուրիայի 62 գավառներում գյուղացիներին բաշխվել է ավելի քան 156 հազար տուն, 59 հազար գլուխ անասուն և ավելի քան 4 միլիոն ցենտներ հացահատիկ։ Ճապոնացիների հետ համագործակցած կալվածատերերի և կուլակների ձեռքին թողնվում են գյուղացիներին հավասար հողաբաժիններ, որը նրանք պետք է մշակեն անձամբ։ Վարձու աշխատանքի շահագործումն արգելված է։

Հող ստացած գյուղացիներին տրվում են անտոկոս վարկեր։ Անցյալ տարի Մանջուրիայի գյուղացիներին իբրև վարկ տրվեց ավելի քան մեկ միլիարդ դոլար և 45 հազար տոննա հացահատիկ։ Այս տարի վարկերի գումարը կկազմի 4 և կես միլիարդ դոլար։ Տարածվում է աշխատանքային փոխօգնության խմբերի ստեղծումը, որոնք կազմակերպվում են գործիքների և քարշող ուժի համատեղ օգտագործման սկզբունքով։

Ազատագրված շրջաններում կիրառված ագրարային ռեֆորմի ողջ կարևորությունը հասկանալու համար բավական է մատնանշել, որ Չինաստանում ամբողջ բնակչության 5

տոկոսը կազմող կալվածատերերի ձեռքին էր գտնվում վարելահողի 70 տոկոսը։ Կապալառուների և կիսակապալառուների թիվը կազմում էր Չինաստանի գյուղական բնակչության 60 տոկոսից ավելին։ Կապալառուն լիակատար (փաստորեն ճորտական) կախման մեջ էր գտնվում կալվածատիրոջից։ Հողի կապալավարձը հաճախ կազմում էր բերքի 90 տոկոսը։ Դրա հետ միասին, կապալառուն պարտավոր էր կալվածատիրոջ համար կատարել զանազան աշխատանքներ և մատուցել «նվերներ»։ Տարեց-տարի աճում էր գյուղացու պարտքը կալվածատիրոջը, և գյուղացին փաստորեն վերածվում էր ճորտի։ Հաճախ պարտքը հատուցելու համար գյուղացին ստիպված էր լինում վաճառել իր երեխաներին (երեխաների գնումն ու վաճառքը և ստրուկ երեխաների աշխատանքի գործադրումը մինչև այժմ էլ լայնորեն կիրառվում է գոմինդանյան Չինաստանում)։

Չինաստանի դեմոկրատական ազատագրված շրջաններում հողային ռեֆորմից հետո չքավորների թիվը արագորեն նվազում է, աճում է միջակների թիվը։ Ռեֆորմը գյուղացիության մեջ առաջացրեց աշխատանքային մեծ վերելք։ Երևան եկան աշխատանքի նոր ձևեր։ Բարձր բերքի առաջավորները լայնո-



րեն մասսայականացվում են, նրանց շնորհվում է «Օրինակելի գյուղացի» կոչումը։ Ազատագրված շրջանների հարյուրավոր գյուղացիներ ստացել են այդպիսի պատվավոր կոչում։ Անցյալում խավար և իրավազուրկ գյուղացին արթնացել է քաղաքական կյանքի համար։ Նա ակտիվ մասնակցում է գյուղացիական սովետների աշխատանքին, օգնում է մերկացնել գոմինդանյան գործակալներին, լրտեսներին, դիվերսանտներին։ Ազատագրված շրջանների գյուղացիները սարի նման պաշտպան են կանգնած նոր, դեմոկրատական իշխանությանը։ Ուր որ գոմինդանյան զորքերին հաջողվում է թափանցել, նրանք գյուղացիներից խլում են հողը և վերականգնում հին կալվածատիրական կարգերը։ Դեմոկրատական շրջանների գյուղացիները միավորվելով, կազմում են ինքնապաշտպանության ջոկատներ և մարտական աշխարհազորներ՝ «Ի պաշտպանություն հողի», մասնակցում են գոմինդանյան բանակի դեմ մղվող պայքարին։

Դեմոկրատական իշխանությունն ազգայնացրել է բոլոր բանկերը, հաղորդակցության ճանապարհները։ Խոշոր հարուստների սեփականությունը բռնագրավված և հանձնված է պետությանը։

Այն ժամանակ, երբ գոմինդանյան Չինաստանում լիակատար տնտեսական քայքայումն է տիրում, կրճատվում է արտադրությունը, չտեսնված չափերի է հասել ինֆլյացիան, Չինաստանի ազատագրված դեմոկրատական շրջաններում, չնայած բլոկադային, արագ տեմպերով վերականգնվում է արդյունաբերությունը, շատ ձեռնարկություններ տալիս են ավելի արտադրանք, քան մինչև պատերազմը։

Ազատագրված շրջաններում կայունացել են գները և կարգավորված է դրամական շրջանառությունը։ Վճռական պայքար է մղվում սպեկուլյացիայի դեմ, զարգանում է պետական առևտուրը։ Հաջողությամբ վերականգնվում է տրանսպորտն ու կապը։ Կանոնավորված է նորմալ մարդատար հաղորդակցությունը այն երկաթուղիների բոլոր ուղղություններով, որոնք գտնվում են ժողովրդաազատագրական բանակի վերահսկողության տակ։ Վերականգնվում են հին խճուղիները և կառուցվում են նորերը։

Մեծ ուշադրություն է նվիրվում բանվորական օրենսդրությանը։ Բանվորական օրը 8—9 ժամից չի անցնում։ Բանվորներին տրվում է ձրի բուժում, աշխատունակությունը կորցնե-



լու դեպքում՝ թոշակ, ինչպես նաև նպաստ ժամանակավոր անաշխատունակության դեպքում։ Ժողովրդական տնտեսության առաջավորները լայնորեն մասսայականացվում են, նրանց տրվում են պարգևներ, շնորհվում է աշխատանքի հերոսի կոչում։

Այս ամենի նշույլն անգամ չկա գոմինդանյան Չինաստանում։

Դեմոկրատական իշխանությունը մեծ աշխատանք է կատարում կուլտուրայի և լուսավորության բնագավառում։ Ազատագրված շրջաններում գործում են 7 բարձրագույն ուսումնական հաստատություն, 210 միջնակարգ և 87.890 տարրական դպրոց, որտեղ սովորում է ավելի քան 5 միլիոն մարդ։ Ստեղծվում են նոր ուսումնական հաստատություններ։

Ազատագրված շրջաններում մեծ հաջողությունների է հասել թատրոնը։ Կլասիկ օպերայի կողքին զարգանում է նաև ժամանակակից դրաման։ Հարյուրավոր թատերական խմբեր հանդես են գալիս զորամասերում և բնակչության մեջ։

Գոմինդանյան Չինաստանում կուլտուրայի աշխատողները ստիպված են խղճուկ գոյություն քարշ տալ, իսկ նրանցից առավել ա-

ռաջավորներին բանտերն են նետում կամ սպանում են թաքստոցից: Ազատագրված շրջաններում գրողները, գիտնականները, արտիստները, լուսավորության աշխատողները ամենապատվավոր մարդիկն են: Նրանք շրջապատված են հոգատարությամբ, նրանց համար ստեղծվում են արդյունավետ աշխատանքի բոլոր պայմանները: Ուստի զարմանալի չէ, որ շատ ինտելիգենտներ գոմինդանյան Չինաստանից փախչում են ազատագրված շրջանները:

***

Ազատագրված դեմոկրատական շրջանների ծաղկումը ցայտուն օրինակն է այն բանի, որ կոմունիստական պարտիան իսկական հայրենասիրական պարտիա է: Կոմպարտիան գործնականում ապացուցեց, որ ինքը պայքարում է չին ժողովրդի ազատության և անկախության համար:

Գոմինդանյան ռեակցիոներների փորձերը ամերիկյան զենքերի ու դոլարների օգնությամբ ոչնչացնելու ազատագրված շրջանները,—ձախողվում են: Ազատագրված դեմոկրատական շրջաններն օրեցօր ամրապնդվում և ընդարձակվում են:

Կ. ՄԻԽԱՅԼՈՎ



Գինը 50 կոպ

Պատ. խմբագրի տեղակալ՝
Կ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

ՎՖ 02496 Պատվեր № 225 Տիրաժ 8.550
Ստորագրված է տպագրության 18/III 1948 թ.
Պոլիգրաֆ. և Հրատ. վարչ. № 2 տպարան, Երևան

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б)
Армении
Блокнот Агитатора